# Հայտնի մարդկանց, գիտնականների և պատմաբանների մեկնաբանությունները Ղուրանի մասին

[ Հայերեն - Armenian – أرميني ]

**Թարգմանություն:**

**EUROPEAN ISLAMIC RESEARCHES CENTER (EIRC)**

& Հմայակ Նալբանդյան (Hmayak Nalbandyan)

**Ստուգում:**

Ախմեդ Հայկական

2012 - 1433

IslamHouse.com

# ﴿ أقوال علماء الغرب عن القرءان الكريم ﴾

« باللغة الأرمينية »

ترجمة: المركز الأوروبي للدراسات الإسلامية

& إيماياك نالبانديان

مراجعة: أحمد الأرميني

2012 - 1433

IslamHouse.com

# Հայտնի մարդկանց, գիտնականների և պատմաբանների մեկնաբանությունները Ղուրանի մասին

Հայտնի մարդկանց, գիտնականների և պատմաբանների մեկնաբանությունները Ղուրանի մասին:

**Գիտնականների մեկնաբանությունները Ղուրանի ինքնատիպ ոճի և գրական անգերազանցելիության մասին:**

**1.** Մեկկայի ժողավուրդը շարունակում էր նրանից հրաշք պահանջել և Մարգարե Մուհամմեդը (Ալլահը օրհնի և խաղաղություն տա նրան) արժանապատիվ տղամարդկությամբ և հավատքի ուժով, իր աստվածային առաքելության ապացույցի համար դիմեց հենց Ղուրանի տեքստին: Մեկկացիները, ինչպես և բոլոր արաբները ուղարկեցին խոսքի և լեզվի մեծ վարպետներ: Եթե Ղուրանը չլիներ Ամենայն Արարչի ազնվությունը, այլ ընդամենը

Մուհամմեդի ստեղծածը՝ ինչպես պնդում էին Մեկկացիները, ապա նրանք կարողանային մրցել նրա հետ ճարտարախոսության և ինչ որ Ղուրանի նման գրքի ստեղծման մեջ: Թող նրանք գրեն տասական այաթներ: Եթե նրանք չկարողանան գրել ( դե

2. իհարկե չեն կարողանա գրել), ապա թող համարեն Ղուրանը աստծո ուղարկած աստվածային պարզ խորհրդանիշ ու հրաշք: (Հայտնի լեզվաբան, արաբերենի հետազոտող Հիբբ Համիլթոն, Օքսֆորդ):

3. Արաբական գրականության այդ աննման աշխատանքը, աշխարհում: Ղուրանի խոսքերով ասած, չունի նախնիներ և հետնորդներ: Բոլոր դարերի մուսուլմանները մի կարծիք ունեն՝ որ այդ գիրքը հնարավոր չէ կեղծել ոչ միայն մեջինով, այլ նաև ոճով... (Արաբագետ Հիբբ Համիլթոն)

4. Անչափելի է Ղուրանի երևույթը արաբական գրականության զարգացման մեջ, և այդ երևույթը բազմակողմանի է: Ղուրանի կամայինությունն ու գաղափարախոսությունը, նրա լեզուն, ոճն ու ռիթմը որոշ չափով ազդեցին բոլոր գրական աշխատանքներին: Որոշ լեզվային հատկությունները անհնարին էր կեղծել գալիք հարյուրամյակի ընթացքում ու գալիք գրականական ստեղծագործություններում: Շքեղության ու ճկունության շնորհիվ՝ որոնց Ղուրանը բերեց

արաբերենի բաղկացության մեջ, արաբերենը սկսեց արագորեն զարգանալ և շուտով սկսեց բավարարել բոլոր արագորեն քաղաքական և սոցիալական ծանրություններ հավաքող արաբական խալիֆայության պահանջներին՝ մի կայսրության՝ որի կարողությունները չափազանց մեծ էին: (արաբերենի մասնագետ Հիբբ Համիլթոն)

**5.** Ժողովուրդը երբ էլ խնդրեր Մարգարե Մուհամմեդին (Ալլահը օրհնի և խաղաղություն տա նրան) հրաշք ցույց տալ որպես ճշմարիտ և աստվածային ուղարկյալության առաքելության, նա միշտ օգտագործում էր Ղուրանի այաթների խորությունն ու իմաստությունը ի պատասխան նրանց հավատքի պակասին: Ի միջի այլոց, նույնիսկ ոչ մուսուլմանների համար չկա ոչինչ ավելի զարմանալի քան պարզ, ամբողջական ու համապարփակ Ղուրանի լեզուն... Զարմանալի, կախարդական ռիթմը և հարուստ, ներդաշնակ լիաձայնությունը բացում են ոչինչի հետ չմիաձուլվող, հուզող ազդեցությունը, նույնիսկ ամենաթշնամաբար տրամադրված և կասկածամիտ մարդկանց համար՝ դառնալով նրանցից շատերի համար Ղուրանի նկատմամբ վարմունքի բեկման պահ: (Պոլ Կազնովա «արաբերենի դասավանդումը Ֆրանսիայում» հոդվածից)

**6.** Ղուրանը թելադրված էր Գաբրիելի կողմից Մարգարե Մուհամմեդին (Ալլահը օրհնի և ողջունի նրան), և այդ

տեքստը դա աստծո բառացի անկեղծությունն է: Ինքը՝ Ղուրանը հրաշք է՝ որը ապացուցում է իր և իր խոսքերի անկեղծությունը խոսքերով՝ որոնք տրված էին Աստծո կողմից մարգարեին: Նրա հրաշալի ինքնատիպության մի մասը նրա ոճի մեջ է՝ նա այնքան անթերի է ու անսասան, որ ոչ մի մարդ և ոչ մի ջին այդպիսի կարճ ժամանակամիջոցում երբեք չի գրի ոչ մի նմանատող սուրա: Ղուրանի մյուս հրաշքը նրա գաղափարախոսական ուղերձի, դուրա-կամային ուսմունքների անկեղծության, աշխարհի ստեղծման վկայությունների և հետագա երևույթների՝ որոնք Մարգարե Մուհամմեդը երբեք չեր կարող ձեռք բերել, մեջ է: (Հարրի Գայլորդ Դորմանի «Դեպի Իսլամը հասկանալը» գրքից)

**7.** Բոլոր նրանք՝ ովքեր ծանոթ են Ղուրանի ինքնատիպին՝ արաբերենով, համաձայն են այդ կրոնական գրքի գրական գեղեցկության գովասանքին: Նրա ձևի հոյակապությունը այնքան յուրօրինակ է հնարավոր չի դա թարգմանել և պահպանել եվրոպական ոչ մի լեզվում՝ որ թարգմանվում է: (Էդվարդ Մոնթեի «Ղուրանի ֆրանսերեն թարգմանելը» գրքից)

**8.** Ղուրանը ապշեցնում ու ցնցում է բոլոր լսողներին իր գեղեցկությամբ և իր արաբական ինքնատիպի հնչողության երկարացումներով: Նրա հակիրճ, արտահայտիչ և հոյակապ ոճը՝ մեծամասամբ

ռիթմավորված տեքստը, կարճ նախադասությունները՝ լցված իմաստների խորությամբ և որոնք շատ դժվար է փոխանցել բառացի թարգմանությամբ, ունեն հզոր ազդեցություն և պայթյունային էներգիա: (Ջոն Ռեյշի «Ղուրանի իմաստությունը» գրքից)

**9.** Ղուրանը գրված է ունիվերսալորեն՝ բոլոր ժամանակների համար և ամենավեհ ու արաբերենի էլեգանտ քուրեյշիտյան բարբառով, ամենագեղեցիկ ու պարզ արտահայտություններով... Ղուրանի ոճը հոյակապ ու հնչող է... և շատ տեղերում՝ մանավանդ այնտեղ՝ ուր ասվում է Ալլահի մեծության ու նրա էպիտետների մասին, նա անկրկնելիորեն լի է մեությամբ ու ճոխությամբ... Ղուրանի լեզուն այնքան գեղեցիկ ու հաջողակ է, այնքան արագ է հրապուրում ու ցնցում լսողներին, որ նրա աստվածային ծագման որոշ հակառակորդներ նույնիսկ ասացին, որ Ղուրանը տիրապետում է կախարդական, խորհրդավոր ազդեցություն: (Ջորջ սեյլի «Ղուրան՝ առաջին քարոզ» գրքից)

**10.** Ճշմարտության հրաշք, իմաստություն ու ոճի պարզություն... (Ազիզ Բոսվորտ Սմիթի «Մուհամմեդն ու Մուհամմեդականություն» գրքից)

**11.** Ղուրանը տիրապետում է հատուկ ռիթմ՝ ընտրյալ գեղեցկություն ու ներդաշնակություն, հրապուրող

ձայն: Շատ արաբ-քրիստոնյաներ խանդավառությամբ են խոսում Ղուրանի ոճի մասին և շատ արաբագիտության մասնագետներ խոստովանում են նրա անգերազանցելիությունը... Իրոքից որ ամբողջ հարուստ ու բերրի արաբական գրականության մեջ չկա ոչ մի բանաստեղծական կամ պատմվածքային ստեղծագործություն՝ որը կարելի կլիներ համեմատել Ղուրանի հետ: (Ալֆրեդ Գիյմոնի «Իսլամ» գրքից)

### Հայտնի մարդկանց որոշ մեկնաբանություններ Ղուրանի աստվածային ուժի և մարդկանց վրա ազդեցության մասին

**1.** Ղուրանի տեքստը կարող ենք նկարագրել որպես ամենախելացի մարդկանց ունակությունների հավաքույթ՝ մարդկության ամենամեծ փիլիսոփաների և ամենաիմաստուն ու տաղանդավոր քաղաքագետների: Սակայն գոյություն ունի ևս մի ապացույց Ղուրանի աստվածային ծագման մասին՝ իր ուղարկման առաջին ակնթարթից և մինչ օրս այն պահպանվել է անփոփոխ վիճակում... Այդ գիրքը՝ որը անդադար կարդում են ամբողջ աշխարհի մուսուլմանները երբեք չի առաջացնի մտահոգության կամ ճնշվածության, հավատացյալ մարդու մոտ ձանձրույթի զգացողություն, այլ ընդհակառակը ամեն օր ձգում է ավելին և բացում է իր խորությունները: Ղուրան կարդացող կամ լսող

մարդու մեջ արթնանում է մեծ պաշտամունքի ու հարգանքի զգացում... Քանի որ մինչ ամենը դա Ալլահի գիրքն է: (Լաուրա Վեչչի Վալերիի «Իսլամի խոստովանություն» գրքից)

**2.** Ղուրանը պարունակում է շատ բառյական ցուցումների կամային հատկանիշների օրինակներ և այն կազմված է փոքրիկ, իրար հետ կապ չունեցող մասերից, այնպես որ նրա ամբողջ տեքստում չկա ոչ մի էջ, որտեղ կարելի է գտնել ցուցում-արտահայտություններ, որը կհետներ և կյանքի ամբողջ մարդկությանը: Ղուրանի այդպիսի կազմվածքը մասամբ ստեղծում է բարոյականության և ցուցմունքների տեքստ, որոնք զուգահեռաբար մի ամբողջություն են և հասկանալի են ամեն մարդու համար կյանքի ցանկացած իրավիճակում: (Ջոն Ուիլիամ Դրապերի «Եվրոպայի ինտելեկտուալ զարգացման պատմությունը» գրքից)

**3.** Ղուրանում գրված բնության աստվածային ըմբռնումը վերաբերվում է Ալլահի Էպիտետներին ու Անուններին: Նրա ուժին, իմաստությանը, ինչպես նաև համատիեզերային աստվածային կանխորոշմանը և նրա միությանը (հավատ այնինչին, որ Ալլահն է միակ տիրակալըը և երկրի ու երկնքի տերը), այլ որ Ղուրանում կա պատմություն այն մասին, թե ինչպես կլինեն հիմնավորված մեծ պետություններն ու կայսրությունները, և այդ ամենը ստիպում է մեզ համաձայնվել, որ Ղուրանը արժանի է մեծ գովաբանման: (Ազիզ Ջ. Ռոդվելլի «Ղուրան:

Ղուրանի մտքերի անգլերեն թարգմանումը» գրքի նախաբանից)

4. Այն չի կարելի գնահատել որպես գրական ստեղծագործություն, դուրս գալով այն կարծիքներից, որոնք հիմնավորված են որոշ սուբյեկտիվ էսթեթիկական նախադրությունների վրա, քանի որ չի կարելի հաշվի չառնել այն ազդեցությունը՝ որը Ղուրանը թողնում էր ժամանակակիցների և Մարգարե Մուհամմեդի հողակիցների վրա: Ղուրանը մի եղբայրության միացրեց նույնիսկ իրար հանդեպ ամենաթշնամաբար տրամադրված ուժերին, թողեց ուժեղ ու համոզիչ տպավորություն լսողների սրտերում, կենդանացրեց նրանց մտքերը՝ ովքեր հեռու էին իմացություններից, կենդանացրեց արաբական մտածելակերպը, նշանակում է, որ նրա ճարտասանությունը իրացործված է, քանի որ անհաշտ ու թշնամական ցեղերից Ղուրանը շատ կարճ ժամանակում ստեղծեց քաղաքակիրթ ազգ...(Տ.Պ. Հյուգիսի և դոկտոր Շտայնգասի «Իսլամի բառարանը» գրքի նախաբանից)

5. ...Իմ փորձը արաբական վսեմ Ղուրանի տեքստի ճարտասանության ու հնչողականության որոշ, թեկուզ և հեռվից այդպես երեվացող օրինակ ստեղծելը կստացվեր Ղուրանի հետ համեմատած շատ անհետաքրքիր, քանի որ այն իր հարուստ ռիթմով ու հանգավորումով ամբողջ մարդկության գեղարվեստական գլուխգործոցն է... Փաստորեն Ղուրանի իմաստի բոլոր թարգմանիչները ժխտում

էին ըստ մուսուլման Փիքթոլլի արտահայտության «եզակի ներդաշնակությամբ ու հանգավորվածությամբ» Ղուրանը, այդ պատճառով զարմանալի չէ, որ թարգմանությունների վերադրման հաճոյացնող ձևով, սկզբնօրինակի զարդարված տեքստով առաջինները ձանձրալի և նեղացված ինչողությամբ են երևում: (Արթուր Ջ. Էրբերրիի «Ղուրանի թարգմանությունը» գրքից)

**6.** Եթե ժամանակակից գիտության լույսի տակ օբյեկտիվորեն ուսումնասիրենք Ղուրանը, ապա նրանց միջև՝ գիտության և Ղուրանի կարելի է փոխարինել փոխըմբռնումը՝ որը մի անգամ չի, որ նշվում էր: Անհնար է նույնիսկ մտածել այն մասին, որ ինչ-որ մարդ Մարգարե Մուհամմեդի (Ալլահն օրհնի ու խաղաղություն տա նրան) ժամանակներում, ունենալով այդ ժամանակաշրջանի գիտելիքներ, կկարողանար այդպես գրել: Այդպիսի մտածմունքները ցույց են տալիս, որ Ղուրանը եզակի է և Ղուրանի ծագման էությունը բացատրելու մատերիալային փորձերը արդեն անբավարար են: (Դոկտոր Մորիս Բյուկայ, Փարիզյան համալսարան, վիրաբուժական կլինիկայի տնօրեն)

**7.** ... Առաջնահերթ, Ղուրանը պահպանեց իր մշտական տեղը... և որպես արդյունք ունենալով անպիղծ, իմաստուն պատմություն, նա մեծ ուժի տեր է, որը ուղղված է մարդկանց խղճի արթնացմանը: (Էդվարդ Մոնթե, հայտնի ֆրանսիացի գիտնական)

8. ... այն պաշտպանված էր (Ղուրանը), և միաժամանակ այդ գիրքը՝ որի նմանը գոյություն չունի նրա մեջի ուղերձների առումով... Ղուրանը դա հեղինակություն է՝ որի ճշգրտության մասին առայժմ ոչ ոք չի համարձակվել արտահայտվել քիչ թե շատ լուրջ կասկածանքով: (Ազիզ Բոսվորտ Սմիթի «Մուհամմեդն ու Մուհամմեդականությունը» գրքից)
9. Ղուրանը Բացահայտոտեն աջակցում է խղճի ազատությանը (Ջեյմս Միչեների «Իսլամ՝ սխալ ըմբռնված կրոն» հոդվածից)
10. Արդարության հասկացությունը հանդիսանում է Իսլամի ամենագեղեցիկ իդեալներից մեկը: Երբ ես կարդում եմ Ղուրանը, տեսնում եմ այդ կյանքի հիմնարար սկզբունքները՝ նրանք միստիկական չեն հանդիսանում, հակառակ, ես տեսնում եմ կամայինության փորձարար համակարգ՝ որը իդեալականորեն համապատասխանում է ամբողջ աշխարհին, համապատասխանում է ամենօրյա կյանքի ամեն տեղի ունեցողին: («Իսլամի իդեալները» թեմայի զեկույց՝ որը հրատարակված է «Սարոժինի Նայդուի խոսքերն ու հոդվածները» գրքում)
11. Մեզ չպետք է զարմացնի այն, որ Ղուրանը պետք է ճանաչել առաջին աղբյուր, որպես բոլոր գիտությունների ղեկավար: Ղուրանում խոսվում է աշխարհի ստեղծման բոլոր հարցերի, մարդկային կյանքի, առևտրի ու բոլոր հնարավոր գործերի մասին: Այսպիսով ստեղծվում են տեքստեր կապված այս կամ այն թեմայի հետ, կամ այս կամ այն թեմայի մի

մեկնաբանության հետ, Ղուրանի կոչը կձգտի դեպի գիտելիքները և եղելիության մասին մտորումները պարզվեցին Իսլամական աշխարհի բարգավաճման և ամբոջ գիտության բոլոր կողմերի պրոգրեսի հիմնական պատճառը... Ընդ որում Ղուրանը ազդեց ոչ միայն արաբների վրա: Հրեա փիլիսոփաները օգտագործում էին արաբական գիտնականների մեթոդաբանությունը մետաֆիզիկական և կրոնական հարցերում: Վերջ ի վերջո նույնիսկ իմաստ չունի հարցնել այն մասին, թե ինչքանով ազդեց արաբական փիլիսոփայությունը և ներշնչեց քրիստոնեական մեկնաբանությանը: Իսլամի մեջ արդնացած հոգևոր շարժումը չարգելափակվեց միայն հոգևոր կշռադատությամբ: Հին հույների փիլիսոփայության, մաթեմաթիկայի, բժշկության և աստղագիտության աշխատանքների հետ ծանոթությունը բերեց այդ հետազոտությունների շարունակմանն ու զարգացմանը: Մարգարե մուհամմեդը (Ալլահն օրհնի և խաղաղություն տա նրան) շատ անգամ հավատացյալների ուշադրությունը դարձնում էր ամենազոր ալլահի երկնային մարմինների անկեղծությանը, որոնց նա նվիրում էր որպես իր հրաշքների հատակ, մարդկանց ծառայելու նպատակով, մարդկանց ցույց էր տալիս նրանց անընդհատ դարժումը, իսկ հերևաբար երկնային մարմիններին պետք չէ երկրպագել, այլ ընդամենը ձգտել նրանց ճանաչմանը: Պարզ է թե ինչու մուսուլմանները ուրիշ ազգերից ավելի շատ առաջ

գնացին աստղագիտության մեջ. Լիովին պարզ է, թե ով նրանց աջակցեց այդ բոլոր հարյուրամյակների ընթացքում: Եվ նույնիսկ մեր ժամանակ աստղագիտությունը ասվում է շատ մոլորակների տեխնիկական տերմինների արաբական անվանումներով: Իսկ միջնադարի եվրոպական բոլոր աստղագետները արաբական աստղագետների աշակերտներն էին: Ճիշտ այդպես էլ Ղուրանը տվեց հոգեշնչում ու հզոր թափ բժշկության զարգացմանը, կանչելով ձգտել դեպի գիտելիքների և մտորումերի մարդկային բնույթի վերաբերյալ: (Պրոֆեսոր Գարտվիգ Գիրշվեյդի «Ղուրանի կառուցվաքի ու մեկնաբանության նոր ուսումնասիրություններ» գրքից)

**12.** Ընդհանուր կարծիքին համաձայն Ղուրանը կարևոր տեղ է զբաղեցնում մարդկությանն ուղարկված աստվածային գրքերի մեջ: Եթե նույնիսկ ամենահայտնի գրական ստեղծագործությունները, որոնք սկսում էին մարդու զարգացման նոր թուլեր հավաքվեն մի տեղ, ապա միևնույնն է նրանք չեն կարող թողնել մարդկային զանգվածների վրա այնպիսի տպավորություն, ինչպիսինն թողե Ղուրանը՝ ապշեցուցիչ ու հսկայական: Ղուրանը ստեղծեց մարդկային մտքերում մի նոր ժամանակաշրջան, աշխարհի մի նոր ընկալում: Սկզբից նա դարձրեց մեծաքանակ, բռի, շեղված ցեղերը մի ազգ, իսկ այնուհետև շարունակեց հզորագույն կրոնաքաղաքական կազմակերպության

ստեղծումը Մարգարե Մուհամմեդի կյանքի ընթացքում, որին և մեր ժամանակներում պետք է ուշադրություն դարձնել որպես արևելքի ու Եվրոպայի ամենամեծ ու հզոր ուժերից մեկը: (Ազիզ Ջ. Մ. Ռոդվելլի «Ղուրան: Ղուրանի իմաստությունների անգլերեն թարգմանությունը» գրքի Գ. Մարգոլուիտի նախաբանից)

**13.** Ամեն նագամ, երբ դա վերցնում ենք ձեռքերում… Մենք հասկանում ենք. Այդ ստեղծագործությունը, որը գործում է շատ մեծ տպավորություն շատ կարճ ժամանակահատվածում, ապշեցնում է, և վերջ ի վերջո, հողեպես խոցում է այնպես, որ ուզում եմ ծնկել նրա առաջ (Ղուրանի)… Ղուրանի ոճն ու բովանդակությունը շատ ուժեղ են, վեհ ու հոյակապ և ամբողջովին համապատասխանում է նրա նպատակներին: Այդ գիրքը ամենագործունեան կլինի բոլոր ժամանակներում: (Տ.Պ.Հյուխի «Իսլամի բառարանը» գրքի Գյոթեի մեջբերումը)

## Մի շարք գիտնականների մեկնաբանությունները Ղուրանի մասին

**1.** Ղուրանում այնքան շատ են ճշմարտությունները, որ ես նույնպես դոկտոր Մուռի պես ոչ մի կասկած չեմ զգում հավատքին, որ այդ բոլոր բացատրությունները իրացործված էին աստվածային ոգեշնչմամբ: (Պրոֆեսոր Տ.Վ.Ն. Պերսո, Մանիտոբի համալսարան,

անատոմիայի, մանկաբուժության ու գինեոլոգիայի պրոֆեսոր, Կանադա)

**2.** ... Իմ կարծիքով չկա ոչ մի ընդդիմախոսություն գենետիկայի ու կրոնի միջև, հակառակ, կրոնը որոշ գիտական մոտեցումներին ոգեշնչում ու օգնուտ տալով կարող է գիտությունը ուղղել, գիտությունն էլ արտացոլված է և գոյություն ունի Ղուրանում, և շատ դարեր անց ապացուցված էր, որ Ղուրանի բոլոր անկեղծությունները ուժ ունեն, և դա հենարան է Ղուրանի տեղեկությունների ճշմարտությունների ալլահից ուղարկած լինելու: (Պրոֆեսոր Ջո Լի Սիմսոն, մոլեկուլյար գենետիկայի, մարդկային գենետիկայի, գինեկոլոգիայի ու օբսցենտրիկայի մասնագետ)

**3.** Որպես գիտնական ես կարող եմ հետաքրքրվել և զբաղվել միայն նրանով՝ ինչ ես պարզ եմ տեսնում: Ես կարող եմ հասկանալ էմբրիոլոգիա և էվոլուցյոն կենսաբանություն: Ես կարող եմ նաև հասկանալ ինձ թարգմանված Ղուրանի խոսքերը: Իմ քիչ առաջ նետած օրինակի պես, եթե կարողանայի տեղափոխվել այն ժամանակաշրջան, ես չէի կարողանա տալ այդ ժամանակ Ղուրանում գրված երևույթներին որևէ բացատրություն, նույնիսկ իմ այժմյան գիտելիներն ու կարողություններն օգտագործելով... Այդ դեպքում ես չեմ տեսնում հակասություններ այն բոլորի միջև, ինչ գրված է Ղուրանում և կյանքի աստվածային ծագման մեջ: (Պրոֆեսոր Է. Մարշալլ Ջոնսոն Թոմաս,

անատոմիայի և էվոլուցիոն կենսաբանության պրոֆեսոր Ջեֆֆերսոնի համալսարանում, Ա.Մ.Ն.)

4. Որոշ այաթներ (Ղուրանի) իրենցից ներկայացնում են մարդու զարգացման շատ մանրամասն նկարագրություն, սկսած բջիջների միացման պահից մինչև մոր արգանդում սաղմի օրգանների զարգացումը: Առաջ գոյություն չուներ այդպիսի մանրամասն ու կատարյալ իր բոլոր փուլերով մարդու զարգացման մասին, իր տերմիններով ու պարզեցումներով տեքստ: Հիմնականում մեր ժամանակից հարյուրավոր տարիներ առաջ այդ այաթները նկարագրում էին մարդու սաղմի ու պտղի զարգացման շատ փուլեր, որոնք ճշտությամբ այդպես էլ նկարագրված են ժամանակակից գիտական գրականության մեջ: Պրոֆեսոր Ջեռալդ Ս. Գարինգեր, Ջորջթաունի համալսարան, բժշկական էմբրիոնոլոգիայի դոցենտ, Ա.Մ.Ն.)

5. Ինձ աննկարագրելի հաճույք է պատճառում օգնելը մարդկանց խոսել այն, ինչ գրված է Ղուրանի այաթներում մոր արգանդում մարդու զարգացման մասին: Ես ասում եմ լիովին հստակ, որ Մարգարե Մուհամմեդին (Ալլահը օրհնի և խաղաղություն տա նրան) բոլոր խոսքերն ու նկարագրություններն ուղարկված էին Ալլահի ոգեշնչմամբ, քանի որ այդ բոլոր գիտելիքները դարձան հասանելի միայն շատ հարյուրամյակներ հետո: Դա ինձ համոզում է, որ Մրագարե Մուհամմեդը աշխարհների աստծո առաքյալն է: (Պրոֆեսոր Քեյթ Լ. Մուռ, բջջային

կենսաբանության ու անատոմիայի պրոֆեսոր, Տորոնտոյի համալսարան, աշխարհահռչակ էմբրիոլոգ, շատ բժշկական գրքերի հեղինակ, Կանադա)

6. Զարգացման փուլերը, որոնցով անցնում է սաղմը մոր արգանդում, շատ բարդ են, ինչ կապված է զարգացման պրոցեսի չընդհատվող պրոցեսի փոփոխությանը, և Ղուրանի ու Սուննայի արտահայտությունների օգտագործմամբ մենք հայտնագործել ենք նոր համակարգ սաղմի զարգացման փուլերի դասակարգման համար: Առաջարկված համակարգը շատ պարզ ու լիակատար է և լիովին համապատասխանում է ժամանակակից էմբրիոլոգիայի տվյալներին: (Պրոֆեսոր Քեյթ Լ. Մուռ, բջջային կենսաբանության ու անատոմիայի պրոֆեսոր, Տորոնտոյի համալսարան, Կանադա)

7. Վերջին չորստարում Մարգարեի հադիսների ու Ղուրանի այաթների մանրամասն ուսումնասիրությունների արդյունքում մենք իմացանք մոր արցանդում պտղի զարգացման փուլերի նոր համակարգ, և զարմանալին այն է, որ դա գրված էր Ղուրանում դեռ յոթերորդ դարում... Ղուրանի բացատրությունները չէին կարող հիմնավորվել մարդկանց ինչ-որ գիտական հայտնաբերությունների վրա, քանի որ յոթերորդ դարում գիտությունը ուղղակի գոյություն չուներ: (Պրոֆեսոր Քեյթ Լ. Մուռ, բջջային կենսաբանության

ու անատոմիայի պրոֆեսոր, Տորոնտոյի համալսարան, Կանադա)

**8.** Ես կարծում եմ, որ Ղուրանի ուղարկման ժամանակ Մարգարե Մուհամմեդի գիտելիքները այդ հարցերի մասին, ինչպիսինն են տիեզերքի ծագման աղբյուրներն, անհնար էր, քանի որ գիտնականները կարող էին բացատրություն տալ դրա մասին միայն վերջին տասնամյակների ընթացքում ամենաժամանակից տեխնոլոգիական մեթոդների օգտագործմամբ...Մարդը, որը հազար չորս հարյուր տարի առաջ դեռ ոչինչ չգիտեր ատոմային ֆիզիկայի մասին, օրինակ՝ չէր կարող նույնիսկ գուշակել, որ երկիրն ու երկինքը կազմված են նույն աղբյուրից կամ լուծեր այլ խնդիրներ, որոնք մենք այստեղ քննարկում ենք: (Պրոֆեսոր Ալֆրեդ Կրոներ, աշխարհագրության պրոֆեսոր, Մայնցի համալսարան, աշխարհի ամենահայտնի մասնագետը, Գերմանիա)

**9.** Եթե միացվեն այդ ամենը, և միացվեն Ղուրանի բոլոր արտահայտությունները երկրի կառուցվածքի մասին, և բոլոր արտահայտությունները, որոնք կապված են գիտության այս կամ այն ասպարեզի հետ, ապա մենք լիովին վստահ կարող ենք ասել, որ դրանք բոլորն էլ ապացուցվում են ժամանակակից գիտական բացահայտումներով... Ղուրանում հիշեցվող աշխարհի ստեղծման մասին արտահայտությունները այդ ժամանակներում դեռ գիտականորեն հիմնավորված չէին, սակայն ժամանակակից գիտական մեթոդները գտնվում են այնպիսի

վիճակում, որ թույլ են տալիս խնդել, որ 1400 տարի առաջ մարգարե Մուհամմեդի (Ալլահը օրհնի եւ խաղաղություն տա նրան) ասածները այսօր ապացուցվում են: (պրեֆեսոր Ալֆրեդ Կորներ, աշխարհագրագրության պրոֆեսոր, Մայնցի համալսարան, Գերմանիա)

**10.** Ես կարող եմ ասել, որ Ղուրանը իմ վրա մեծ տպավորություն գործեց, քանի որ ես գտա նրանում աստղագիտական ճիշտ փաստեր: Այս փաստերը ավելի ուժեղ գործում են այնպիսի աստղագետների վրա, ինչպիսիք մենք ենք՝ տիեզերքի ամենափոքր մասը հետազոտողներս: Նույնիսկ որպեսզի հասկանանք մեր աշխարհի ստեղծման ամենափոքր մասնիկը, մենք շատ ջանք ենք թափում, : Քանի որ աստղադիտակի շնորհիվ կորեղ ենք տեսնել երկնքի միայն շատ փոքր հատվածը, չենք կարող քննարկենք ամբողջ տիեզերքի մասին: Այնպես որ, ես կարծում եմ, որ Ղուրան կարդալով եւ նրանից հարցերի պատասխաններ ստանաով ես կարող եմ որոշել իմ ապագա տիեզերական ուսումնասիրությունների ուղին: (պրոֆեսոր Եշեխիդե Կոզաի, Ճապոնիա, Տոկիոի աստղադիտարանի տնօրեն)

**11.** Ես ուզում եմ վստահորեն հայտարարել այն, ինչ տեսել ենք անսովոր է: Կարելի է համաձայնվել գիտական բացատրությունների հետ, կարելի է չհամաձայնվել նրանց հետ, սակայն ձեռագիրները, որ մենք տեսնում ենք, գնահատելու համար անհրաժեշտ է ունենալ ավելի շատ հասկանալու ունակություն,

քան մենք ունենք՝ սովորական մարդկային փորձի տեսանկյունից: (պրոֆեսոր Արմստրոնգ, Աստղագիտության պրոֆեսոր NASA)

**12.** Դժվար է պատկերացնել որ այդպիսի բարձր մակարդակի գիտություն կար դեռ 1400 տարի առաջ: Հնարավոր է, որ որպես ամենահասարակ մտքերից ինչ-որ բան լիներ, սակայն այդ ամենի մասին այդքան մանրամասն պատմելը ճափազանց դժվար է: Այդ դեպքում դա մարդկային գիտելիք չէ: Սովորական մարդը այդքան մանրամասնորեն չի կարող բացատրել նման փաստերը: Այսպիսով, ես կարծում եմ, որ այդ գիտելիքը պետք է որ եկած լինի գերբնական աղբյուրից: (պրոֆեսոր Դուրջա Բրաո, Սաուդյան Արաբիա, Ջիդդա, Աբդուլ-ազիզ թագավորի համալսարանի օվկիանոսային աշխարհագրության պրոֆեսոր)

**13.** … ես հավատում եմ, որ այն ամենը, ինչ Ղուրանում գրված էր 1400 տարի առաջ՝ ճշմարտություն է եւ կարող է ապացուցվել գիտական մեթոդներով… դա Աստծո ոգեշչումն է, որ գրկել է ամբողջ աշխարհը՝ իր գիտելիքներով: Այնպես որ, եկել է ժամը ասելու. «Չկա այլ Աստված, բացի Ալլահից, Մուհամմեդը նրա առաքյալն է»: (պրոֆեսոր Տեյատետ Տեյասեն, Թայլանդ, Չինգ Մաիի համալսարանի անատոմիայի ու էմբրիոլոգիայի ամբիոնի վարիչ)

**14.** Ղուրանը հայտնվեց մի քանի դար առաջ եւ գիտության մեջ ինչ-որ նոր բան էլ մենք հայտնաբերեցինք, ամեն ինչ ապացուցվում է այդ

գրքում: Դա նշանակում է, ոչ Ղուրանը Ալլահի խոսքն է: (պրոֆեսոր Ջոլի Սամսոն, գինեկոլոգիայի պրոֆեսոր)

**15.** Այդ գիրքը (Ղուրանը) խոսում է անցյալի, ներկայի ու ապագայի մասին: ես ոչինչ չգիտեմ մարգարե Մուհամմեդի (Ալլահը օրհնի եւ խաղաղություն տա նրան) ժամանակ ապրող քաղաքակրթության մակարդակի մասին եւ ոչինչ չգիտեմ նրանց գիտական գիտելիքների մակարդակի մասին: բայց ոչ մի կասկած չկա, որ գիտության ու տեխնոլոգիայի մակարդակները շատ ցածր ու պրիմիտիվ էին այդ ժամանակ, այնպես որ այն, ինչ մենք կարդում ենք այսօր ունի իր մեջ Ալլահից լույս: Նա ուղարկեց մարգարե Մուհամմեդին ներշչանք: Ես ինքս ինձ հարց տվեցի. Արդյոք կարող էր գոյություն ունենալ այդպիսի կատարյալ գիտելիք եւ արեցի մերձավոր արեւելքի հին քաղաքակրթությունների պատմության ուսումնասիրություն: Եւ իմ հետազոտությունները ավելի ամրապնդեցին Ալլահի՝ մարգարե Մուհամմեդին ուղարկած հավատքը: Գիտելիքի օվկիանոսից նա ուղարկեց նրան ընդամենը մի փոքր մասնիկ եւ նույնիսկ այդ փոքրիկը բացահայտվեց գիտության կողմից միայն վերջերս: Մենք հույս ունենք, որ աշխարհագրությունն ու Ղուրանը միշտ կգտնվեն երկխոսության մեջ: (պրոֆեսոր Պալմար, աշխարհագրության ասպարեզի ամենահայտնի ամերիկացի հետազոտողներից)

**16.** Հատված հարցազրույցից Ղուրանի այն տվյալների մասին, որ սարերը ամրացնում են երկրային մակերեւույթը.

Ես հավատում եմ, որ գիտելիքները, որ ներառված են Ղուրանում, չափազանց հետաքրքիր են, եվ կարծում եմ, որ անհնար է, որ դրանք գրված լինեին մարդու կողմից: Ես իստակ հավատում եմ, որ ինչ էլ ասեք, դուք ճիշտ եք, հետեւաբար այն, ինչ ասվում է այդ գրքում (Ղուրանում) մեծ արժեք է ներկայացնում: ես ձեր հետ համաձայն եմ (պրոֆեսոր Սյավդա, աշխարհահռչակ ճապոնացի գիտնական, որը մասնագիտացել է օվկիանոսային աշխարհագրությունում)